Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ






№ 22 ՆՈՅԵՄԲԵՐ 1954

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

Էջ



---


Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿՊ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին։ Հեռախոս 2—52—78։




# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՆՍՏԻՏՈՒՑԻԱՆ


**Ա. Մ. ԽՍԱՅԱՆ**

**Պրոֆեսոր, իրավաբանական գիտությունների դոկտոր**


*Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան բացեց համաշխարհային պատմության նոր դարաշրջան։ Ռևոլյուցիան մարդկության պատմության մեջ առաջին անգամ ջարդելով հին բուրժուա-կալվածատիրական պետական ապարատը, նրա փլատակների վրա ստեղծեց նոր, բարձրագույն տիպի պետություն՝ բանվորների և գյուղացիների պետություն։ Աշխարհում առաջին սոցիալիստական պետության ծագումն ու զարգացումը անխզելիորեն կապված է Սովետական Միության Կոմունիստական պարտիայի մեծ հիմնադիր և իմաստուն առաջնորդ Վ. Ի. Լենինի անվան հետ։*

*Սովետական մարդը հպարտ է այն բանի գիտակցությամբ, որ նա աշխարհում ա-*

առաջինն է բարձրացրել կոմունիզմի համար մղվող պայքարի դրոշը։

«...Մենք իրավունք ունենք հպարտանալու, — ասում էր Վ. Ի. Լենինը, — և հպարտանում ենք նրանով, որ մեզ երջանկություն բաժին ընկավ սկսելու սովետական պետության կառուցումը, սկսելու դրանով համաշխարհային պատմության նոր դարաշրջան...»։

Սովետական պետության առաջացումով արմատապես փոխվում են հարաբերությունները պետության և ժողովրդի միջև։ Աշխատավորությանը ճնշելու, կեղեքելու և շահագործելու գործիքից պետությունը հաղթանակած բանվոր դասակարգի ձեռքում դարձավ աշխատավորությանն ազատագրելու գործիք, շահագործող դասակարգերին ճնշելու և լիկվիդացնելու գործիք, սոցիալիզմ և կոմունիզմ կառուցելու գործիք։ Սովետական սոցիալիստական պետության ուժը ամենից առաջ նրանումն է, որ նրա զարգացման բոլոր էտապներում նրան ղեկավարում է Կոմունիստական պարտիան։ Ինչպես ասված է ՍՍՌՄ Կոնստիտուցիայի 126 հոդվածում, Սովետական Միության Կոմունիստական պարտիան «...աշխատավորների առաջավոր ջոկատն է կոմունիստական



հասարակություն կառուցելու համար նրանց մղած պայքարում»։

«Կոնստիտուցիայի էությունն այն է, — գրել է Վ. Ի. Լենինը, — որ պետության հիմնական օրենքներն առհասարակ և այն օրենքները, որ վերաբերում են ընտրական իրավունքին ներկայացուցչական հիմնարկների համար, նրանց իրավասությանը և այլն, արտահայտում են ուժերի իրական հարաբերակցությունը դասակարգային պայքարում»։

Մեծ Լենինի անմիջական ղեկավարությամբ 1918 թվականին ընդունվեց առաջին Սովետական Կոնստիտուցիան՝ ՌՍՖՍՌ-ի Կոնստիտուցիան։ Ռևոլյուցիայի առաջին տարիներին մշակված պետական շինարարության սկզբունքների, ինչպես նաև հետագա տարիներին Կոմունիստական պարտիայի և աշխատավոր մասսաների կողմից կուտակված փորձի հիման վրա Սովետների Համամիութենական 8-րդ արտակարգ համագումարը 1936 թվականի դեկտեմբերի 5-ին հաստատեց ՍՍՌՄ-ի նոր Կոնստիտուցիան՝ ամենադեմոկրատական Կոնստիտուցիան աշխարհում։

«ՍՍՌՄ-ի նոր Կոնստիտուցիայի նախագծի գլխավոր հիմքը, — ասել է Ի. Վ. Ստալինը Սովետների Համամիութենական 8-րդ

արտակարգ համագումարում,— կազմում են սոցիալիզմի սկզբունքները, սրա գլխավոր հիմունքները, որոնք արդեն նվաճված և իրականացված են»։

Կոնստիտուցիան՝ դա պետության հիմնական օրենքն է, որն արտահայտում է տիրապետող դասակարգի կամքը և հանդիսանում է պետության հետագա օրենսդրության հիմքը։ Սովետական պետության զարգացման առաջին և երկրորդ փազաների միջև ընկած ժամանակաշրջանում վիթխարի փոփոխություններ տեղի ունեցան սովետական հասարակության, նրա սոցիալ-տնտեսական կառուցվածքի, դասակարգային ուժերի հարաբերակցության մեջ։ Այդ փոփոխությունները արտացոլվեցին ՍՍՌՄ 1936 թվականի Կոնստիտուցիայի մեջ։

ՍՍՌՄ Կոնստիտուցիան արտահայտում է սովետական ժողովրդի լրիվ և փաստական սուվերենիտետը։ Ինչպես ասված է ՍՍՌՄ Կոնստիտուցիայի 3-րդ հոդվածում՝ «Ամբողջ իշխանությունը ՍՍՌՄ-ում պատկանում է քաղաքի և գյուղի աշխատավորներին՝ հանձինս աշխատավորների դեպուտատների Սովետների»։ Ժողովրդի այդ սուվերենիտետը հիմնվում է վարից վեր իշխանության բոլոր օրգանների՝ աշխարհում ամենադեմո-



կրատական ընտրական սիստեմի հիման վրա կատարվող ընտրության վրա, իր ընտրողների առաջ դեպուտատի պատասխանատվության վրա, ընտրողների վստահությունը չարդարացնող դեպուտատին ետ կանչելու ընտրողների իրավունքի վրա։

Սովետական պետության սոցիալ-դասակարգային էությունը բնորոշում է ՍՍՌՄ Կոնստիտուցիայի առաջին հոդվածը, որտեղ ասված է. «Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միությունը բանվորների և գյուղացիների սոցիալիստական պետություն է»։

Սոցիալիստական հասարակությունը, վերացնելով պետության և անհատի շահերի հակադրությունները, բոլոր աշխատավորներին դարձրեց անդասակարգ կոմունիստական հասարակության ակտիվ և գիտակից կառուցողներ։ Սովետական ժողովրդի այդ բարոյա-քաղաքական միասնությունը հիմնըվում է բանվորների, գյուղացիների, ինտելիգենցիայի շահերի ընդհանրության, ժողովուրդների բարեկամության, սովետական հայրենասիրության վրա։

ՍՍՌՄ Կոնստիտուցիան օրենսդրական կարգով ամրապնդեց նոր սոցիալիստական արտադրական հարաբերությունները, որոնց

հիմքն են կազմում տնտեսության սոցիալիստական սիստեմը և արտադրության գործիքների ու միջոցների սոցիալիստական սեփականությունը։

Սոցիալիստական սեփականությունը ՍՍՌՄ-ում ունի կամ պետական սեփականության ձև (համաժողովրդական ունեցվածք), կամ կոոպերատիվ-կոլտնտեսային սեփականության ձև (առանձին կոլտնտեսությունների սեփականություն, կոոպերատիվ միավորումների սեփականություն)։

Պետական սոցիալիստական սեփականությունը հանդիսանում է սոցիալիստական սեփականության առաջատար, առավել բարձրագույն ձևը։ Ինչպես ասված է ՍՍՌՄ Կոնստիտուցիայում, պետական սեփականությունը հանդիսանում է համաժողովրդական ունեցվածք, այն ծառայում է ամբողջ ժողովրդին, օգտագործվում է հասարակության շահերի համար՝ ամբողջությամբ վերցրած։ Կոոպերատիվ-կոլտնտեսային սեփականությունը պետական սոցիալիստական սեփականությունից տարբերվում է հանրայնացման աստիճանով։ Զարգանալով սոցիալիզմից աստիճանաբար կոմունիզմին անցնելու ուղիով, հետագայում այն որակապես



չի տարբերվի համաժողովրդական ունեցվածքից։

Սոցիալիստական սեփականությունը՝ սովետական կարգերի սրբազան ու անձեռնմխելի հիմքն է, հայրենիքի հարստության ու հզորության աղբյուրը, բոլոր աշխատավորների ունևոր ու կուլտուրական կյանքի աղբյուրը։

ՍՍՌՄ Կոնստիտուցիան ընդունում և ամեն կերպ պահպանում է նաև քաղաքացիների անձնական սեփականությունը։

Սոցիալիզմի հիմնական տնտեսական օրենքին համապատասխան՝ Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը մշտական հոգատարություն են ցուցաբերում աշխատավորների նյութական ու կուլտուրական աճող պահանջմունքների բավարարման համար։ Պարտիայի և կառավարության վերջին որոշումները, որոնք ուղղված են գյուղատնտեսության զարգացմանը, ժողովրդական սպառման առարկաների արտադրության շեշտակի վերելքին, աշխատավորների նյութական բարեկեցության բարելավմանը, լիովին բխում են սոցիալիզմի հիմնական տնտեսական օրենքից։

Ժողովրդական եկամտի բաշխման սկզբունքը սոցիալիստական հասարակության

մեջ լիովին որոշվում է արտադրության եղանակի սոցիալիստական բնույթով։ Դրան լիովին համապատասխան, ՍՍՌՄ Կոնստիտուցիան օրենսդրական կարգով ամրապնդեց սոցիալիզմի սկզբունքը. «յուրաքանչյուրից՝ ըստ նրա ընդունակության, յուրաքանչյուրին՝ ըստ նրա աշխատանքի» (12 հոդ.)։

Անձնական սպառման միջոցների բաշխումն ըստ աշխատանքի, հանդիսանում է սոցիալիզմի տնտեսական օրենքներից մեկը։ Սոցիալիզմի այդ արդարացի սկզբունքի իրականացման համար անհրաժեշտ է ամեն կերպ ամրապնդել աշխատավորների աշխատանքային կարգապահությունը և խստագույն հսկողություն սահմանել աշխատանքի չափի ու սպառման չափի նկատմամբ։

Վերջերս պարտիան և կառավարությունը անցկացրին մի շարք կարևոր միջոցառումներ գյուղատնտեսության հետագա զարգացման ընթացքում կոլտնտեսությունների և կոլտնտեսականների նյութական շահագրգռվածությունը բարձրացնելու ուղղությամբ։

Ինչպես ասված է ՍՄԿՊ Կենտկոմի փետրվար-մարտյան պլենումի որոշման մեջ, «Գյուղատնտեսական արտադրության զարգացման մեջ կոլտնտեսությունների և կոլ-



տնտեսականների նյութական շահագրգռվածության սկզբունքի անշեղ պահպանումը առաջիկայում ևս պետք է հանդիսանա պարտիական ու սովետական կազմակերպությունների ամենօրյա հոգատարությունը»։

Ի տարբերություն բուրժուական կոնստիտուցիաների, որոնք նացիոնալիստական են և ամրապնդում են տիրապետող ազգերի արտոնյալ դրությունը, ՍՍՌՄ Կոնստիտուցիան խորապես ինտերնացիոնալ է։ Կոմունիստական պարտիայի ազգային քաղաքականությանը համապատասխան, ՍՍՌՄ Կոնստիտուցիան օրենսդրական կարգով ամրապնդեց Սովետական Միության ժողովուրդների լիակատար իրավահավասարությունը պետական, տնտեսական, կուլտուրական և հասարակական-քաղաքական կյանքի բոլոր բնագավառներում։ Կոնստիտուցիան ամրապնդեց յուրաքանչյուր ազգի ինքնուրույն պետականության իրավունքը։ ՍՍՌՄ կազմի մեջ են մտնում կամավոր կերպով միավորված 16 սովետական սոցիալիստական ռեսպուբլիկա։ Կոնստիտուցիան օրենքով պատժում է քաղաքացիների իրավունքների ամեն տեսակի սահմանափակումը կամ առավելություններ սահմանելը քաղաքացիների ռասայական և ազգային պատ-

կանելխությունից ելնելով, ինչպես նաև ռասայական կամ ազգային բացառիկության կամ ատելության ու արհամարհանքի քարոզը։

ՍՍՌՄ Կոնստիտուցիան արձանագրել է սովետական քաղաքացիների մեծ իրավունքները. աշխատանքի, հանգստի իրավունքը, ծերության, հիվանդության և աշխատունակությունը կորցնելու դեպքում նյութական ապահովություն ստանալու իրավունքը, կրթության իրավունքը, խոսքի, մամուլի, ժողովների ազատությունը, խղճի ազատությունը։ Կոնստիտուցիան չի սահմանափակվում քաղաքացիների ձևական իրավունքների ֆիքսացիայով, ինչպես այդ անում են բուրժուական կոնստիտուցիաները, այլ ծանրության կենտրոնը փոխադրում է այդ իրավունքների երաշխավորման, այդ իրավունքների իրականացման միջոցներն ապահովելու հարցի վրա։

ՍՍՌՄ Կոնստիտուցիայի օրը Սովետական Միության աշխատավորների հետ միասին տոնում են նաև աշխարհի բոլոր ազատասեր ժողովուրդները։ Նրանք քաջ գիտակցում են, որ սոցիալիզմը և դեմոկրատիան անպարտելի են, որ ՍՍՌՄ Կոնստիտուցիան միակ, մինչև վերջը դեմոկրատական Կոնստիտուցիան է աշխարհում, որովհետև դե-



մոկրատիան ՍՍՌՄ-ում դեմոկրատիա է աշխատավորների համար, դեմոկրատիա է բոլորի համար։

Կապիտալիստական երկրներում կեղծ է դեմոկրատիան, այն ի սպաս է դրված շահագործող դասակարգերին։ Շահագործող դասակարգերը ընտրական ցենզերի միջոցով ստեղծել են բազմաթիվ խոչընդոտներ աշխատավորներին երկրի կառավարման գործից հեռու պահելու համար։ Բուրժուական կոնստիտուցիաները ուղղակի ժխտում կամ փաստորեն ոչնչի են վերածում քաղաքացիների իրավունքների հավասարությունը և դեմոկրատական ազատությունները։

ՍՍՌՄ Կոնստիտուցիան պայքարի մի ծրագիր է ազատասեր ժողովուրդների ձեռքին, որը ցույց է տալիս, թե այն, ինչ իրականացված է ՍՍՌՄ-ում, լիովին կարող է իրականացվել նաև մյուս երկրներում։

---

## ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԴԱՏԱՐԱՆՆԵՐԻ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ԵՎ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԱՆԵԼԻՔՆԵՐԸ

Ս. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

ՀԿՊ Կենտկոմի ագիտացիայի սեկտորի վարիչ

*Ժողովրդական դատարանների ընտրությունները, որ մեր ռեսպուբլիկայում տեղի են ունենալու այս տարվա դեկտեմբերի 12-ին, ունեն քաղաքական կարևորագույն նշանակություն: Այդ ընտրությունները վիթխարի դեր են խաղալու սովետական սոցիալիստական օրինականությունն ու արդարադատությունը ամրապնդելու, ժողովրդական դատարանների աշխատանքը բարելավելու, ժողովրդի և պետության շահերը թշնամական ոտնձգություններից պաշտպանելու գործում:*

*Ընտրությունները հաջող անցկացնելու նպատակով, ռեսպուբլիկայի պարտիական և սովետական կազմակերպությունները լայն նախապատրաստական աշխատանք են կատարում: Ագիտկոլեկտիվներն արդեն համալրվել են արտադրության առաջավորներով, քաղաքային ու գյուղական ինտելիգենցիայի*



*լավագույն ներկայացուցիչներով, ագիտացիոն-մասսայական աշխատանքի մեջ ներգրավվում են նորանոր ուժեր: Երևան քաղաքի, Էջմիածնի, Հոկտեմբերյանի, Աշտարակի և ռեսպուբլիկայի մյուս շրջանների հարյուրավոր ագիտատորներ պարտիական կազմակերպությունների հանձնարարությամբ ընտրողների համար ագիտացիոն զրույցներ և զեկուցումներ են ունենում ընտրությունների Կանոնադրության վերաբերյալ:*

*Նախընտրական օրերին անհրաժեշտ է խելացի ու մտածված կերպով օգտագործել անցյալ ընտրությունների հարուստ փորձը: Ընտրությունների հաջող անցկացման համար խապաս դնել քաղաքական-մասսայական աշխատանքի բոլոր ձևերն ու միջոցները՝ զրույցներ, զեկուցումներ ու դասախոսություններ, թերթերի ու գրքերի կոլեկտիվ ընթերցանություն, կինոֆիլմերի կոլեկտիվ դիտում, պատի թերթերի և ագիտացիոն թերթիկների լույս ընծայում և այլն:*

*Այս օրերին յուրաքանչյուր ագիտատոր պետք է մասսայական-բացատրական աշխատանք կատարի ընտրողների հետ, հասնի այն բանին, որ ոչ մի ընտրող դուրս չմնա ամենօրյա քաղաքական ագիտացիայից:*

*Ագիտատորների կողմից կատարվող սիստեմատիկ, հետաքրքիր և նպատակասլաց*

ագիտացիան բարձրացնում է աշխատավորների քաղաքական ու աշխատանքային ակտիվությունը։ Լավագույն ագիտացիոն աշխատանքի շնորհիվ ամեն մի ընտրող հստակ պատկերացում է ունենում, թե պարտիան և կառավարությունը ի՞նչ խնդիրներ են դրել իրենց ձեռնարկության կամ կոլտնտեսության առջև, թե առաջիկայում ի՞նչ է անելու ինքը, որպեսզի այդ խնդիրները հաջողությամբ կենսագործվեն։

Ագիտացիոն զրույցների ընթացքում մեր առօրյա կյանքից վերցրած կոնկրետ փաստերով ագիտատորը ունկնդիրներին պետք է ցույց տա, որ Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը բացի ժողովրդի շահերից, նրա բարօրությունից, աշխատավորների նյութական բարեկեցությունը անդադրում բարձրացնելուց ուրիշ շահեր չունեն, որ պարտիան ու կառավարությունը իրենց ներքին ու արտաքին քաղաքականությունը ամբողջովին ի սպաս են դրել ժողովրդական մասսաների շահերին, բնակչության նյութական բարեկեցության անշեղ բարձրացմանը և նրանց տրված մեծ իրավունքների պահպանմանը։

Ընտրողներին մանրամասնորեն պարզաբանելով պարտիայի արտաքին ու ներքին



քաղաքականությունը, միաժամանակ նրանց պետք է պարզ պատկերացում տալ, թե ինչպես պարտիան անհաշտ պայքար է մղում բյուրոկրատիզմի և քաշքշուկի բոլոր երևույթների դեմ, անողոք պատժում է նրանց, ովքեր աշխատավորների կարիքներին ու պահանջներին անփույթ վերաբերմունք են ցույց տալիս։

Ագիտացիոն զրույցի ընթացքում ունկնդիրներին պետք է խորն ու բազմակողմանիորեն բացատրել ՍՍՌՄ Կոնստիտուցիան և ընտրությունների Կանոնադրությունը։ Մանրամասնորեն պարզաբանել նրանց ՍՍՌՄ Կոնստիտուցիայի հատկապես այն դրույթները, որոնք յուրաքանչյուր քաղաքացու պարտավորեցնում են կատարել օրենքները, պահպանել աշխատանքային կարգապահությունը, ազնիվ վերաբերվել հասարակական պարտականությունների կատարմանը, հարգել սոցիալիստական համակեցության կանոնները, պահպանել սոցիալիստական հանրային սեփականությունը և այլն։

Մեր ագիտատորները մշտական ագիտացիա պետք է մղեն ինչպես ժողովրդական դատավորների և ժողովրդական ատենակալների կոմունիստ թեկնածուների օգտին, այնպես էլ անպարտիական թեկնածուների օգ-

տին, կոմունիստների և անպարտիականների բլոկի օգտին։ Այդ կապակցությամբ անհրաժեշտ է ընտրողներին հանգամանորեն պարզաբանել, որ ժողովրդական դատարանների ընտրությունների ժամանակ փայլուն կերպով դրսևորվում է սովետական հասարակության միասնությունը։ Կոմունիստական պարտիան ինչպես միշտ, այնպես էլ այս ընտրությունների ժամանակ, հանդես կգա անպարտիականների հետ միասին բլոկ կազմած։ Հենց այդ հանգամանքը ցույց է տալիս, որ մեզ մոտ անխախտ է պարտիայի, կառավարության և ժողովրդի միասնությունը։

Հանգամանորեն պարզաբանելով ընտրողներին ընտրությունների Կանոնադրությունը, ագիտատորը միաժամանակ կոնկրետ փաստերով ցույց է տալիս, թե ինչպես պարտիան ու կառավարությունը մեծ հոգատարություն են ցուցաբերում սովետական քաղաքացիների իրավունքների պահպանման նկատմամբ։ Պարտիան և կառավարությունը անդադրում հոգ են տանում, որպեսզի է՛լ ավելի ամրապնդվի սոցիալիստական օրինականությունը, սրբությամբ պաշտպանվեն մեր Հայրենիքի յուրաքանչյուր քաղաքացու իրավունքները, որ տրված են նրան ՍՍՌՄ Կոնստիտուցիայով։



Ագիտացիոն զրույցների ընթացքում ագիտատորը ունկնդիրների ուշադրությունը բևեռում է այն հանգամանքի վրա, որ ժողովրդական դատարանը հենց այն կարևորագույն զենքն է, որի միջոցով Սովետական պետությունը պաշտպանում է քաղաքացիների իրավունքները և օրինականությունը։ Այնուհետև ունկնդիրներին պետք է պարզաբանել այն խոշոր հակադրությունը, որ գոյություն ունի սովետական և բուրժուական դատարանների միջև։ Ի հակադրություն բուրժուական դատարանի, որը պաշտպանում է շահագործող դասակարգերի շահերը և ճնշում աշխատավորներին, սովետական դատարանը ժողովրդական է, նա ընտրվում է ժողովրդի կողմից, միշտ գտնվում է ժողովրդի անմիջական հսկողության տակ և աշխատում է ժողովրդի օգտին։ Սովետական դատարանը իր գործունեության համար հաշվետու է ընտրողների առաջ, բնակչության առաջ։ Այդ հանգամանքը լայն հնարավորություն է ընձեռում սովետական քաղաքացուն՝ քննադատելու դատարանի գործունեությունը. իսկ այն դեպքում, երբ ժողովրդական դատավորը կամ ատենակալը չի արդարացնում իրեն, ընտրողները կարող են ետ կանչել նրան և նրա փոխարեն ընտրել արժանավոր մարդու։

*Աշխատավորների լայն շրջանում նպատակասլաց և արդյունավետ քաղաքական ագիտացիա մղելը մեծ արվեստ է, լուրջ և պատասխանատու գործ։ Ագիտատորները ամեն օր մասսաներին հասցնում են կոմունիզմի մեծ գաղափարները, ժամանակին արձագանքում են մեր կյանքի բոլոր հարցերին, տարածում են արտադրության նորարարների առաջավոր փորձը, իրենց ամենօրյա բացատրական աշխատանքով բարձրացնում են մասսաների աշխատանքային և քաղաքական ակտիվությունը։*

*Ագիտատորը այդ պատվավոր պարտականությունը կարող է հաջողությամբ կատարել միայն այն դեպքում, եթե նա բարեխղճորեն է վերաբերվում իրեն հանձնարարված գործին, միշտ աշխատում է հարստացնել իր գիտելիքները, ժամանակին ու խնամքով է նախապատրաստվում հերթական զրույցներին։*

*Նախընտրական կամպանիայի այս օրերին մեր ագիտատորներն իրենց ամբողջ աշխատանքը ի սպաս կդնեն Հայկական ՍՍՌ ժողովրդական դատարանների ընտրությունները բարձր կազմակերպվածությամբ անցկացնելու գործին, կապահովեն բոլոր ընտրողների ակտիվ մասնակցությունը ընտրություններին։*

---

ԱԳԻՏԱՑԻՈՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՓՈՐՁԻՑ

---

## ԱԳԻՏԿՈԼԵԿՏԻՎԸ ՊԱՅՔԱՐՈՒՄ Է ԲԱՐՁՐՈՐԱԿ ԱՐՏԱԴՐԱՆՔԻ ՀԱՄԱՐ

### Երևանի Ծխախոտի ֆաբրիկայի ագիտկոլեկտիվի ղեկավար ԱՇԽԵՆ ԵՆԳՈՅԱՆԻ պատմածը

*Մոսկվայից ցնծագին լուր ստացվեց՝ Երևանի ծխախոտի ֆաբրիկան 1954 թվականի երրորդ եռամսյակում հաղթող է դուրս եկել Համամիութենական սոցիալիստական մրցությունից և արժանացել է երկրորդ կարգի մրցանակի։ Այդ լուրը նոր ուժ ու եռանդ ներշնչեց ֆաբրիկայի աշխատողներին, որոնք նոր թափով ծավալեցին սոցիալիստական մրցությունը՝ տարեկան պլանը ժամկետից մեկ ամիս շուտ կատարելու, երկրին ավելի շատ ու բարձրորակ արտադրանք տալու համար։*

*Ծխախոտի ֆաբրիկայի կոլեկտիվը արդեն չորս անգամ արժանանում է Համամիութենական մրցանակի՝ պահպանելով գերազանց որակի արտադրանքի ֆաբրիկայի բարձր*

կոչումը։ Կոլեկտիվի ձեռք բերած այդ հաջողությունների, հատկապես արտադրանքի որակի բարձրացման համար մղվող պայքարում բանվորներին ու բանվորուհիներին կազմակերպելու գործում զգալի աշխատանք է կատարում նաև ֆաբրիկայի պարտկազմակերպության ագիտկոլեկտիվը։

Գերազանց որակի արտադրանքի համար մղվող պայքարը մեր ֆաբրիկայում առանձնապես մեծ թափով սկսեց ծավալվել բնակչության համար լայն սպառման ապրանքների արտադրության շեշտակի վերելք կազմակերպելու և նրանց որակը բարձրացնելու մասին մեր պարտիայի և կառավարության կողմից ընդունված որոշումներից հետո։

Անցած տարվա վերջերից և հատկապես 1954 թվականին ֆաբրիկային նոր, ավելի բարձր առաջադրանք տրվեց, ինչպես արտադրանքի քանակի ավելացման, այնպես և նրա որակի բարձրացման ուղղությամբ։ Ֆաբրիկայի կոլեկտիվը մեծ խանդավառությամբ ընդունեց հարազատ պետության նոր առաջադրանքը։

Բանվորները, բանվորուհիները, ամբողջ կոլեկտիվը պայքարի ելան նոր առաջադրանքը պատվով կատարելու համար։ Ա-



ռաջնակարգ կարևորություն տալով կոլեկտիվի աշխատանքային այդ խանդավառությունը կազմակերպելու, այն ճիշտ ճանապարհով ուղղելու գործին, ֆաբրիկայի պարտկազմակերպությունը այդ գործում ներգրավեց նաև ագիտկոլեկտիվին՝ նրան առաջադրանք տալով ոչ մի րոպե չթուլացնել բարձրորակ արտադրանքի համար մղվող ագիտացիոն-մասսայական աշխատանքը։ Եվ պետք է ասել, որ մեր ագիտկոլեկտիվը հաջողությամբ է կատարում պարտկազմակերպության այդ առաջադրանքը։

Առանց չափազանցելու կարելի է ասել, որ ագիտկոլեկտիվի բոլոր նիստերում, որ մենք ունենում ենք ամեն շաբաթ, մյուս հարցերի շարքում անպայման քննության է առնվում նաև արտադրանքի որակի համար տարվող ագիտացիոն-մասսայական աշխատանքի հարցը։ Այդ խորհրդակցություններում մենք հնարավորություն ենք ունենում ի մի բերել արտադրանքի որակի համար ֆաբրիկայի բոլոր ցեխերում տարվող պայքարը, վեր հանել առանձին օղակներում եղած թերությունները, կոլեկտիվ կերպով որոշել այդ թերությունների վերացման գործում ագիտատորների անելիքները։ Կբերեմ հետևյալ օրինակը։

Երկու եռամսյակ էր, ինչ ծխախոտի ցեխի ձեռքում էր գտնվում ֆաբրիկայի միջցեխային փոխանցիկ դրոշը։ Բայց ահա սեպտեմբեր ամսի կեսերից մյուս ցեխերից սկսեցին ահազանգեր ստացվել, որ ծխախոտի ցեխն սկսում է իջեցնել ծխախոտի վերամշակման որակը, որն անդրադառնում է մյուս ցեխերի աշխատանքի վրա։

Պարտբյուրոն անհապաղ քննության առավ ծխախոտի ցեխում տիրող վիճակը։ Պարզվեց, որ ցեխի աշխատանքների թուլացման համար օբյեկտիվ ոչ մի պատճառ չկա։ Բանն այն էր, որ ցեխի աշխատողները պարզապես հանգստացել էին ձեռք բերած հաջողություններով, աչքաթող էին արել այն հանգամանքը, որ հին ցուցանիշները ներկայումս չեն բավարարում ֆաբրիկայի առաջադրած պահանջները։ Անհրաժեշտ էր ցեխի բանվորներին բացատրել, ցույց տալ նրանց թերացման պատճառները և հետևանքները։ Այդ խնդրի կատարումը պարտբյուրոն դրեց ցեխի ագիտատոր, կոմունիստ Մ. Թությանի և ցեխի պետ Ռ. Հովսեփյանի վրա։

Ընկ. Մ. Թությանը մեր լավագույն ագիտատորներից է։ Արտադրական հարցերի վերաբերյալ նրա կազմակերպած զրույց-



ներն անցնում են աշխույժ, հետաքրքիր ու նպատակասլաց։ Հիանալի կերպով գիտենալով ցեխի արտադրական տեխնոլոգիան, աշխատողների բնավորություններն ու կարողությունները, նա իր զրույցների ժամանակ արտադրության այս կամ այն հարցի մասին խոսում է ոչ թե ընդհանրապես, այլ կոնկրետ օրինակներով ցույց է տալիս, թե որտեղից են առաջանում թերությունները, ո՞վքեր են պատասխանատու դրանց համար, ինչպե՞ս պետք է վերացնել դրանք։

Ագիտատոր Թությանն այդպես վարվեց նաև այս անգամ։ Նախքան իրեն առաջադրված խնդրի կատարմանն անցնելը, նա ուսումնասիրեց, թե ո՞րն է ծխախոտի որակի իջեցման պատճառը։ Նա պարզեց, որ իրենց ցեխը ծխախոտը հաջորդ ցեխերին է հանձնել ոչ պահանջվող տոկոսի խոնավությամբ, որովհետև աշխատողները, վստահ իրենց ուժերի վրա, խոնավացման նույն ռեժիմին են ենթարկում ծխախոտի բոլոր տեսակները, առանց ներթափանցելու գործի մանրամասնությունների մեջ։

Եվ ահա, զինված անհրաժեշտ փաստերով ու օրինակներով, ագիտատոր Թությանը կազմակերպեց իր զրույցը արտադրանքի որակի հարցում ցեխի ունեցած բացերի շուր-

չը։ Զրույցը նա անցկացրեց հենց ցեխում՝ ցուցադրելու համար իր տրամադրության տակ ունենալով ծխախոտի բոլոր տեսակները և ֆաբրիկայի լցնող ու սիգարետի ցեխերից վերցրած ցածրորակ արտադրանքի նմուշներ, որոնք առաջացել էին հենց իրենց ցեխի մի շարք աշխատողների թողտվության հետևանքով։

Ունկնդիրներն ագիտատորին լսեցին մեծ ուշադրությամբ և ապա իրենք արեցին մի շարք առաջարկություններ ծխախոտի տեսակների դասավորման, աշխատանքային տեղն ըստ նոր պահանջների կազմակերպելու վերաբերյալ։

Ագիտատոր Թությանը, իհարկե, չբավարարվեց այս զրույցով։ Նա և ցեխի պետը յուրաքանչյուր խոնավացման կամերայի մոտ սպասարկող բրիգադայի ցույց տվեցին, թե ինչպես պետք է տարվի ծխախոտի տարբեր տեսակների խոնավացման ռեժիմը։ Թությանն սկսեց անձամբ ստուգել կամերաներից հանված յուրաքանչյուր պարտիա ծխախոտի որակը՝ տանելով խոնավացման որակի հատուկ հաշվառում։

Այսպես մոբիլիզացված աշխատելով, 10—15 օրից ծխախոտի ցեխը վերացրեց



ճեղքվածքը և նորից սկսեց քայլել առաջավորների շարքերում։

Մեր ֆաբրիկան իր թողարկած արտադրանքով անմիջականորեն կապված է սպառողների լայն մասսաների հետ։ Ֆաբրիկան սպառողներից բազմաթիվ նամակներ է ստանում, ուր նրանք իրենց գոհունակությունն են հայտնում լավորակ ծխախոտի համար, կամ թե խիստ դիտողություններ են անում ցածրորակ արտադրանքի համար։

Մեր ագիտկոլեկտիվը լայնորեն օգտագործում է սպառողների դիտողությունները, որպեսզի հետագայում ավելի բարձրորակ արտադրանք թողարկի։ Ահա մի օրինակ։

Ֆաբրիկան նամակ ստացավ Սովետական Բանակի զորամասերից մեկի մի խումբ զինվորներից։ Նրանք գոհունակությամբ էին խոսում մեր արտադրած սիգարետների մասին և ցանկություն հայտնում, որ ֆաբրիկան մշտապես այդպիսի բարձրորակ սիգարետներ արտադրի։ Այդ մարտիկները ցանկություն էին հայտնում իմանալ ֆաբրիկայի աշխատանքի, պետական առաջադրանքի կատարման մասին։

Մենք այդ նամակը քննության դրինք ագիտկոլեկտիվի նիստում և որոշեցինք այն լայնորեն մասսայականացնել բանվորների

մեջ։ Յուրաքանչյուր ագիտատոր նամակը կարդաց իր ունկնդիրներին, որը մեծ ոգևորություն առաջ բերեց նրանց մեջ։

Լավ նախապատրաստված այս զրույցը լավ էլ արդյունքներ տվեց։ Այդ կարելի է իլյուստրացիայի ենթարկել սիգարետների ցեխի ագիտատոր Ժորա Հովսեփյանի անցկացրած զրույցի օրինակով։

Մարտիկներից ստացած նամակի ընթերցումից հետո, ագիտատոր Հովսեփյանը հայտնեց ֆաբրիկայի կոլեկտիվի պատասխան նամակի մասին։ Այպա սկսվեց աշխույժ զրույց, բանվորներն ու բանվորուհիներն իրենց գոհունակությունն էին հայտնում նախապատրաստվող նամակի առթիվ։ Այդ ժամանակ ագիտատորը գրպանից հանեց մի տուփ սիգարետ և մեկական գլանակ բաժանեց ունկնդիրներին։ Գլանակների թուղթը փոքր-ինչ յուղոտված էր։ Նրանց վրա եղած համարից իմացվեց, որ դա լցնող Ա. Բաղալյանի արտադրած գլանակներն են։

— Այս տուփը,— ասաց ագիտատորը,— ֆաբրիկային է վերադարձրել սպառողը։ Տեսնո՞ւմ եք, թե ինչպիսի պահանջկոտ է այժմ մեր սպառողը։ Իսկ ընկեր Բաղալյանը կարո՞ղ էր այս մեկ տուփն անգամ այս



որակի չարտադրել. իհարկե կարող էր։ Ուրեմն ամեն ինչ կախված է միայն մեր աշխատանքից։

Ագիտատորը շատ լավ գիտեր, որ Բաղալյանը ցեխի լավագույն աշխատողներից է, որ նա հերթափոխում լցնում է 700—750 հազար գլանակ և որ 10—15 յուղոտած գլանակը մեծ բան չի այդ հսկայական արտադրանքի մեջ։ Բայց ընտրելով այդ օրինակը, ագիտատորը դրանով ուզում էր ընդգծել, որ իրենք իրավունք չունեն սպառողին ցածրորակ արտադրանք տալու և որ նույնիսկ Բաղալյանի նման լավագույն աշխատողին էլ չի ներվի, եթե նա թեկուզ մեկ գլանակ խոտան բաց թողնի։

Ինչ խոսք, որ ագիտատոր Ժ. Հովսեփյանի այդ զրույցը լավ հետևանքներ ունեցավ արտադրանքի որակի հետագա բարձրացման շուրջը ցեխի աշխատողներին մոբիլիզացնելու համար։ Երրորդ եռամսյակում ձեռք բերած բարձր ցուցանիշների համար սիգարետների ցեխին հանձնվեց ֆաբրիկայի միջցեխային փոխանցիկ դրոշը։

Ահա այսպես են Երևանի Ծխախոտի ֆաբրիկայի ագիտատորները գործնականում պայքարում գերազանց արտադրանքի ֆաբրիկայի կոչումը բարձր պահելու, սպառողին լավորակ ապրանք տալու համար։

---

# ԻՆՉ ԵՆ ՏՎԵԼ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ԳԻՏՆԱԿԱՆՆԵՐԸ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆԸ

*Հարազատ Կոմունիստական պարտիայի ու Սովետական կառավարության որոշումները գյուղատնտեսության հետագա զարգացման վերաբերյալ մեծ հեռանկարներ բացեցին գիտության բոլոր ճյուղերի զարգացման համար։*

*Գիտության ֆրոնտի աշխատողների առջև դրվեցին կոնկրետ խնդիրներ՝ նոր հայտնագործումների միջոցով նպաստել ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի շեշտակի վերելքին։ Այդ ուղղությամբ մեր ռեսպուբլիկայի գիտության բնագավառի աշխատողները որոշ հաջողությունների են հասել հատկապես վերջին տարիների ընթացքում։ Այդ են հաստատում հետևյալ փաստերը։*

✪ *Գիտությունների ակադեմիայի Բույսերի գենետիկայի և սելեկցիայի ինստիտուտը ռեսպուբլիկայի մի շարք բամբակացան կոլտնտեսություններում, հատկապես Հոկտեմբերյանի և Էջմիածնի կոլտնտեսություններում, արմատավորել է բամբակենու խոր ծերատում անցկացնելու առաջավոր փորձը։*



✪ *Ստեփանավանի շրջանի կոլտնտեսություններում կարտոֆիլի ցանքն այս տարի կատարվեց քառակուսի-բնային եղանակով։ Նոր Բայազետի շրջանի Հացառատ գյուղում ստեղծվել է կարտոֆիլի էլիտային տնտեսություն՝ հինգ հեկտար տարածության վրա։*

✪ *Ինստիտուտի կողմից Շահումյանի, Արտաշատի և Կոտայքի շրջաններում 1.000 հեկտար տարածության վրա բազմացվում է «Եղվարդ—4» շրջանացված աշնանացան ցորենի տեսակը։*

✪ *1954 թվականի ընթացքում մեր գիտնականներն արտադրության մեջ ուսումնասիրում են բանջարա-բոստանային կուլտուրաների և կարտոֆիլի քառակուսի-բնային եղանակով ցանք կատարելու էֆեկտիվությունը ռեսպուբլիկայի տարբեր գոտիներում, կապված սննդի տարբեր պայմանների հետ։ Ուսումնասիրության նպատակն է՝ ստանալ բանջարեղենի և կարտոֆիլի վաղահաս ու բարձր բերքատու տեսակներ ռեսպուբլիկայի լեռնային շրջանների համար։ Արդեն ինստիտուտը ստացել է պոմիդորի արժեքավոր տեսակներ (№№ 20 և 45), որոնք աչքի են ընկնում իրենց բարձր բերքատվությամբ։ Ստացված է նաև բադրիջանի մի նոր տեսակ (№ 12), որը և՛ վաղահաս է և՛ բարձր բերքատու։*

✪ *Գիտությունների ակադեմիայի Պտղաբուծության ինստիտուտը 1953 թվականի ընթացքում ռեսպուբ-*

լիկայի կոլտնտեսություններին և սովխոզներին է հանձնել մի շարք պտղատու ծառերի արժեքավոր տեսակներից 19.000 տնկի և 16.000 կտրոն։ Հայտնաբերված են խնձորենու 30 և տանձենու 26 արժեքավոր տեսակներ։ Այդ նոր տեսակներն աստիճանաբար ներդրվում են արտադրության մեջ։

✪ Գիտությունների ակադեմիայի ագրոքիմիայի լաբորատորիան Շահումյանի շրջանի Ի. Վ. Ստալինի անվան կոլտնտեսությունում արտադրական փորձեր է կատարել պոմիդորի պարարտացման և նրա աճեցման ուղղությամբ տորֆա-հումուսային թաղարներում։ Լաբորատորիայի կողմից մշակված և Գյուղատնտեսության մինիստրությանն են հանձնված աշնանացան ցորենի պարարտացման նոր ագրոմիջոցառումները, որոնք այժմ կիրառվում են ռեսպուբլիկայի մի շարք շրջաններում, ինչպես, օրինակ, Ապարանում, Սպիտակում, Բասարգեչարում, Ախտայում, Թալինում և այլն։ Ցորենի ցանքերի պարարտացման քիմիական նոր միջոցառումը գործնականում ցույց տվեց, որ յուրաքանչյուր հեկտարից կարելի է միջին հաշվով 20 ցենտներ լրացուցիչ բերք ստանալ։

✪ Գիտությունների ակադեմիայի բույսերի պաշտպանության սեկտորը մշակել է բամբակենու ցեցի դեմ պայքարի մի շարք միջոցառումներ, որոնք լայնորեն կիրառվում են ինչպես մեր ռեսպուբլիկայի բամբակացան շրջաններում, այնպես էլ Նախիջևանի ավտոնոմ ռեսպուբլիկայում։ Սեկտորը պարզել է,



որ ցեց վնասատուի թրթուրները կարելի է ոչնչացնել քիմիական նյութերով, հատկապես «ԴԴՏ»-ի ու ծծմբի խառնուրդով բույսերին կրկնակի փոշոտում կամ սրսկում կատարելու միջոցով։

✪ Նույն սեկտորը ստուգումներից հետո արտադրության կհանձնի ցորենի ժանգադիմացկուն երկու նոր տեսակ, որոնք ունեն վնասատուներից պաշտպանվելու մեծ դիմացկունություն և բարձր բերքատու են (հեկտարից կարելի է ստանալ 35—37 ցենտներ)։

✪ 1954 թվականի ընթացքում բույսերի պաշտպանության սեկտորը, Գյուղատնտեսության մինիստրության հետ միասին Նոր Բայազետի շրջանում կատարել է դաշտային մկների արտաքնային թունավորում օդանավերի միջոցով։ Սեկտորը գյուղատնտեսության արտադրության մեջ է ներդրել առվույտի վնասատուների դեմ քիմիական պայքարի մի շարք միջոցառումներ։ Հայկոնսերվտրեստի սովխոզներում լավագույն արդյունք են տալիս սեկտորի կողմից մշակված խնձորենու վնասատուների դեմ քիմիական պայքար կազմակերպելու միջոցառումները։

✪ Գիտությունների ակադեմիայի Բուսաբանական ինստիտուտն ամեն տարի ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկություններին և կանաչապատման կազմակերպություններին բաց է թողնում մինչև 80 հազար դեկորատիվ և մրգատու ծառերի ու թփերի տնկիներ, ինչպես նաև ծաղիկների սերմեր և սածիլներ։

Ինստիտուտն ընտրել է այն ծառատեսակները, որոնք պետք է հիմք հանդիսանան Երևան—Սևան խճուղու կանաչապատման համար։

✪ Հողագետները վերջացրել են ռեսպուբլիկայի մի շարք կոլտնտեսությունների հողային տարածությունների ուսումնասիրությունները և կազմել են այդ կոլտնտեսությունների քարտեզները։

✪ Անասնապահական ինստիտուտը արտադրության մեջ ներդրել է պանրի նոր տեսակներ («Երևանի», «Արագած» և այլն)։

✪ Միկրոբիոլոգիայի սեկտորը մշակել է պայքարի միջոցառումներ պոմիդորի բակտերիային հիվանդությունների դեմ։

✪ Սևանի հիդրոբիոլոգիական կայանը մեծ աշխատանք է կատարում Սևանա լճի ձկնարուծության զարգացման համար։ Կայանի կողմից մշակված է ձկան արհեստական բազմացման մեթոդիկա։ Միայն 1954 թվականի ընթացքում արհեստականորեն բազմացվել և լիճն են բաց թողնվել 91 հազար ձկնկիթ։

Կայանը մշակել և արտադրության է հանձնել Արփա լճի ձկան պաշարների ռացիոնալ օգտագործման հնարավորությունները։ Գիտականորեն հաստատված է, որ յուրաքանչյուր տարի այդ լճում կարելի է որսալ մինչև 1.000 ցենտներ ձուկ։

✪ Անասնաբուծության բնագավառի գիտական աշխատողները վերջին տարիների ընթացքում մշակել



են անասունների հիվանդությունների դեմ պայքարի զանազան միջոցառումներ։

✪ Անասնապահական ինստիտուտը ստացել է ճագարի մի նոր ցեղ՝ «մարդիր», որը ինստիտուտի էքսպերիմենտալ բազայում բազմացվել և հանձնվել է ռեսպուբլիկայի կոլտնտեսություններին։ Միայն Նոր Կողբ գյուղի կոլտնտեսությունը (Շահումյանի շրջան) ճագարաբուծական ֆերմայից յուրաքանչյուր տարի ստանում է 16—18 հազար ռուբլու լրացուցիչ եկամուտ։

✪ Ինստիտուտը մշակել է կոմպլեքսային մի շարք միջոցառումներ, որոնց կիրառմամբ իջնում է կովերի ստերջության տոկոսը։ Այդ միջոցառումների կիրառման շնորհիվ միայն Ստեփանավանի շրջանի Ստալինի անվան կոլտնտեսությունում կովերի ստերջությունը 1952 թվականի համեմատությամբ, 1953 թվականին իջել է 9,7 տոկոսով։

✪ Գինեգործական-խաղողագործական ինստիտուտի գիտական աշխատողները երկար տարիների գիտա-հետազոտական աշխատանքից հետո ստացել են խաղողի նոր տեսակներ, որոնք նախատեսված են Արարատյան դաշտավայրի, Լենինականի սարահարթի, Իջևանի և Շամշադինի լեռնային մասերում մշակելու համար։ Ինստիտուտը տվել է սեղանի խաղողի 5 նոր տեսակ («Արմենիա», «Հրազդանի», «Արագածի», «Վարդենի» և «Տոկուն»)։ Խաղողի այդ տեսակներն աչքի են ընկնում բարձր բերքատվությամբ (220—300 ցենտ. հեկտարից)։

---

# ԱԼԲԱՆԻԱՆ ԸՆԹԱՆՈՒՄ Է ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՈՒՂԻՈՎ

## Մ. ՁԵԿՄԱՐԵՎ

*1944 թվականի նոյեմբերի 29-ը պանծալի տարեթիվ է ալբանական ժողովրդի ազատագրական շարժման պատմության մեջ։ Այդ օրը Ալբանիայի աշխատավորները Աշխատանքի պարտիայի ղեկավարությամբ, հենվելով Սովետական Բանակի համաշխարհային-պատմական հաղթանակների վրա, երկրից վռնդեցին գերմանա-իտալական զավթիչներին, տապալեցին միապետական բռնակալությունը և երկրում հաստատեցին ժողովրդա-դեմոկրատական իշխանություն։*

*Անցած տասը տարում ալբանական ժողովուրդը Աշխատանքի պարտիայի ղեկավարությամբ և Սովետական Միության անշահախնդիր օգնությամբ կատարեց պատմական ռեվոլյուցիոն վերափոխումներ, քաղաքական և տնտեսական ամուր հիմք ստեղծեց սոցիալիզմի կառուցման համար և նշանակալից հաջողություններ ձեռք բերեց սոցիալիստական շինարարության բոլոր բնագավառներում։*



*Ալբանիայի բազմադարյան ամբողջ պատմությունը լի է ալբանական ժողովրդի պայքարի հերոսական էջերով, պայքար, որ նա մղել է հանուն երկրի ազատության և անկախության ընդդեմ բազմաթիվ թշնամիների։ Ալբանիան գտնվում էր հռոմեական և բյուզանդական կայսրությունների տիրապետության տակ, իսկ սկսած 15-րդ դարից երկրում հաստատվեց թյուրքական բռնապետության մռայլ շրջանը, որը տևեց 500 տարի։*

*Առաջին համաշխարհային պատերազմը Ալբանիային բերեց նոր օկուպացում։ Ալբանիան իրար մեջ բաժանեցին հունական, իտալական, ֆրանսիական և այլ զավթիչներ։*

*Երկրորդ համաշխարհային պատերազմի տարիներին Ալբանիայում հզոր պարտիզանական շարժում ծավալվեց ֆաշիստական օկուպանտների դեմ։ Ժողովրդա-ազատագրական շարժման գլուխ կանգնեց Աշխատանքի պարտիան։ Պարտիզանական ջոկատները վերածվեցին նոր՝ Ժողովրդա-ազատագրական բանակի մարտական ստորաբաժանումների՝ բրիգադաների, դիվիզիաների և կորպուսների։ Երկրի պատմության մեջ առաջին անգամ այդ պայքարը ավարտվեց աշխատավոր ժողովրդի լիակատար հաղթանակով։ Ալբա-*

նիան դարձավ իսկապես անկախ, սուվերեն ժողովրդական ռեսպուբլիկա։



Ազատվելով օտարերկրյա զավթիչների բազմադարյան լծից, ալբանական ժողովուրդը ժառանգություն ստացավ տնտեսապես և կուլտուրապես հետամնաց, պատերազմների հետևանքով կողոպտված ու քայքայված մի երկիր։ Հենց միայն համաշխարհային երկրորդ պատերազմի ժամանակ Ալբանիան հսկայական նյութական վնասներ կրեց։ Երկրում ավերվել էին 40 քաղաք, 1.560 գյուղ, հրկիզվել էր 62.475 տուն, ոչնչացվել և անպետքացվել էր եղած արդյունաբերական ձեռնարկությունների 75 տոկոսը, պայթեցվել էր 5.547 գծամետր կամուրջ և 248 գծամետր նավամատույց, ավերվել, ջրհեղեղվել և կործանվել էր հանքերի մեծ մասը։

Ժողովրդական կառավարությունը և Աշխատանքի պարտիան ամբողջ ժողովրդի աջակցությամբ և Սովետական Միության եղբայրական օգնությամբ կարողացան հաղթահարել այդ բոլոր դժվարությունները և կազմակերպել ավերված տնտեսության վերականգնումը։ Երկրում անցկացվեց արդյունաբերության, բանկերի, ընդերքի, անտառների և



հաղորդակցության բոլոր միջոցների ազգայնացում, կատարվեց հողային ռեֆորմ։ Լայն ճակատով ծավալվեց արդյունաբերական նոր ձեռնարկությունների կառուցումը և հների վերակառուցումը։

Այդ բոլորի հետևանքով 1953 թվականին արդյունաբերական համախառն արտադրանքի ծավալը 1938 թվականի համեմատությամբ աճեց 10 անգամ։ Այդ նույն ժամանակամիջոցում քրոմի հանքանյութի հանույթը աճեց 8,5 անգամ, նավթինը՝ 1,5 անգամ, ածխինը՝ 29 անգամ, բիտումի արտադրությունն ավելացավ 4,9 անգամ, ցեմենտինը՝ 2 անգամ, բամբակե գործվածքներինը՝ 41 անգամ, ձիթենու յուղինը՝ ավելի քան 2 անգամ, մակարոնինը՝ 16 անգամ, իսկ էլեկտրաէներգիայի արտադրությունը աճեց ավելի քան 22 անգամ։

1953 թվականին սոցիալիստական սեկտորի տեսակարար կշիռը արդյունաբերության մեջ կազմեց 99 տոկոս, երկաթուղային, ծովային և ավտոմոբիլային տրանսպորտում՝ 100 տոկոս, ներքին առևտրի մեջ՝ մոտավորապես 90 տոկոս, արտաքին առևտրի մեջ՝ 100 տոկոս, բանկերում, ապահովագրական ընկերություններում և խընայդրամարկղներում՝ 100 տոկոս։

Տասը տարվա ընթացքում ալբանական ժողովուրդը Սովետական Միության օգնությամբ կառուցել է ավելի քան 25 խոշոր արդյունաբերական ձեռնարկություն, որոնք սարքավորված են առաջավոր սովետական տեխնիկայի վերջին խոսքով։ Ալբանիայի մայրաքաղաք Տիրանայում կառուցվեց և 1951 թվականին շահագործման հանձնվեց Ի. Վ. Ստալինի անվան տեքստիլ կոմբինատը, որը տարեկան արտադրում է 20 միլիոն մետր բամբակե գործվածքներ։

Նույն, 1951 թվականին, Կորչայում գործարկվեց շաքարի մեծ կոմբինատը։ Նրա տարեկան արտադրողականությունը կազմում է 10 հազար տոննա շաքար։ Կառուցվել են նաև Էնվեր Խոջայի անվան մետաղամշակման գործարանը, Վ. Ի. Լենինի անվան հիդրոէլեկտրակայանը, մետաքսագործական և բամբակագործական ֆաբրիկաներ, ֆաներայի կոմբինատ, 2 բամբակազտիչ գործարան, դաբաղանյութերի գործարան, բրնձազտիչ գործարան, կառուցվել են 5 խոշոր ջերմաէլեկտրակայան, ծխախոտի գործարան և մի շարք այլ ձեռնարկություններ։ Ներկայումս մի հզոր հիդրոէլեկտրակայան է կառուցվում Մատի գետի վրա։ Այդ էլեկտրակայանի գործարկու-



մից հետո, երկրի բոլոր էլեկտրակայանների կարողությունը կավելանա գրեթե երկու անգամ։

Ալբանական ժողովուրդը երկրի պատմության մեջ առաջին անգամ կառուցեց երկաթուղի, որը Ալբանիայի մայրաքաղաք Տիրանան կապում է Ադրիատիկ ծովի խոշոր նավահանգիստ Դուրեսի և արդյունաբերական քաղաք Էլբասանի հետ։

Մեծ փոփոխություններ են կատարվել Ալբանիայի Ժողովրդական Ռեսպուբլիկայի նաև գյուղատնտեսության մեջ։ 1946 թվականին անցկացված հողային ռեֆորմի հետևանքով ընդմիշտ ոչնչացվեց աշխատավոր գյուղացուն խեղդող ֆեոդալա-կալվածատիրական և կուլակային ստրկությունը։ 70 հազար հողազուրկ և սակավահող գյուղացիական տնտեսություններ ստացան հող, անասուններ, սերմացու և գյուղատնտեսական ինվենտար։

1953 թվականին երկրում ցանքատարածությունը, 1938 թվականի համեմատությամբ, աճեց ավելի քան 64 տոկոսով։

Հաջողությամբ զարկ է տրվում բամբակի և շաքարի ճակնդեղի մշակությանը, որոնք ըստ էության նոր կուլտուրաներ են Ալբանիայի գյուղատնտեսության մեջ։ Գյու-

*ղատնտեսության մեքենայացումը և առա-
ջավոր ագրոտեխնիկայի արմատավորումը
ապահովում են բերքատվության անշեղ
բարձրացումը։ Արդեն 1953 թվականին ըս-
տացվեց այնքան բամբակ, որը լրիվին բա-
վական է Ալբանիայի ամբողջ տեքստիլ ար-
դյունաբերությունը հումքով ապահովելու
համար։ Երկու և կես անգամ շատ ծխախոտ
ստացվեց, քան 1938 թվականին։ Բարձրա-
ցել է նաև եգիպտացորենի, ցորենի, տարե-
կանի և այլ կուլտուրաների բերքատվու-
թյունը։ Հսկայական աշխատանք է կատար-
վել ճահիճների չորացման և ոռոգիչ ջը-
րանցքների կառուցման ուղղությամբ։ Լայն
մասշտաբներով կիրառվում է դաշտերի
պարարտացումը հանքային պարարտանյու-
թերով։*

*Գյուղատնտեսության հետագա վերելքի նկատմամբ ժողովրդական կառավարության և Աշխատանքի պարտիայի կողմից ցուցաբերվող հոգատարությունը լայն հեռանկարներ է բացել ալբանական գյուղի առջև։ Համոզվելով կոլեկտիվ տնտեսություն վարելու առավելությունների մեջ, աշխատավոր գյուղացիությունը կամավոր հիմունքներով միավորվում, կազմում է գյուղատնտեսական արտադրական կոոպերատիվներ։ Ներկա-*



*յումս Ալբանիայում կազմակերպված են և գործում են 128 կոոպերատիվներ, որոնք միավորում են ավելի քան 7.000 տնտեսություն։*

*Երկրում կան ավելի քան 20 պետական հողագործական տնտեսություններ, որոնք հանդիսանում են առաջավոր փորձի տարածողները հողագործության մեջ։ Ստեղծվել և հաջողությամբ գործում են 13 մեքենա-տրակտորային կայաններ։*

*Անշեղորեն աճում է Ալբանիայի աշխատավորների նյութական բարեկեցությունը։*

*Երկրում կառուցվել են մեծ թվով դպրոցներ, բանվորական ակումբներ, կինո-թատրոններ և կուլտուրական այլ հիմնարկներ։ Ներկայումս Ալբանիայում կա 2.483 միջնակարգ և ոչ-լրիվ միջնակարգ դպրոց, որը չորս անգամ շատ է 1938 թվականին եղածից։ Նախատեսված է մինչև 1955 թվականը զանազան տեխնիկական դպրոցներում պատրաստել 8.500 տեխնիկ և 54 հազար որակյալ բանվոր։*

*Գրադարանների և ընթերցարանների թիվը աճել է ավելի քան 40 անգամ։ Թերթերի և ժուռնալների տիրաժը ավելացել է 6 անգամ, գրադարանները մեծ քանակությամբ գեղարվեստական գրականություն և ժողո-*

*վորդական տնտեսության բոլոր ճյուղերին վերաբերող գրականություն են ստանում ՍՍՌՄ-ից։*

*Ստեղծվել են 6 բարձրագույն ուսումնական հաստատություններ՝ տնտեսագիտական, պոլիտեխնիկական, բժշկական, մանկավարժական, գյուղատնտեսական և իրավաբանական ինստիտուտներ։*

*Ժողովրդական կառավարությունը և Աշխատանքի պարտիան վերջերս անցկացրին թվով երրորդ գների իջեցումը, որը բնակչությանը տվեց 300 միլիոն լեկի զուտ տնտեսում։ 1954 թվականին Ալբանիայի բնակչությունը 1950 թվականի համեմատությամբ շաքար ստանում է 68 տոկոսով ավելի, մակարոնեղեն՝ 48, 7 տոկոսով, միս և ձկնեղեն՝ 37,6 տոկոսով, բամբակե գործվածքներ՝ 101,1 տոկոսով, բրդե գործվածքներ՝ 73 տոկոսով ավելի։*

*Աշխատանքի պարտիայի ղեկավարությամբ, Սովետական Միության և ժողովրդական դեմոկրատիայի երկրների եղբայրական օգնությամբ ալբանական ժողովուրդը նորանոր հաջողություններ ձեռք կբերի սոցիալիստական հասարակարգի կառուցման գործում։*

---



## ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ՆՅՈՒԹԱԿԱՆ ԲԱՐԵԿԵՑՈՒԹՅԱՆ ԱՆՇԵՂ ՎԵՐԵԼՔԸ ՍՍՌՄ-ՈՒՄ

(Թվեր և փաստեր)

*ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման ու ծաղկման շնորհիվ անընդհատ բարելավվում է աշխատավորների նյութական բարեկեցությունը։*

*Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը ներքին քաղաքականության ասպարեզում միշտ էլ գլխավոր խնդիրը համարել և համարում են սովետական ժողովրդի նյութական և կուլտուրական հարաճուն պահանջմունքների առավելագույն բավարարումը։*

★ *1954-1956 թվականների ընթացքում մեր երկրում կառուցվելու է 144 մսի կոմբինատ և մսամշակման այլ ձեռնարկություն, 720 կաթնամթերքի մշակման գործարան, 100 կաթի և 16 կաթնա-կոնսերվային գործարան, 24 ձեթ-օճառի կոմբինատ, 145 հացի գործարան, որից արդեն այս տարի գործարկվել են 41-ը։*

*Միայն նոր կառուցվող շաքարի գործարանները յուրաքանչյուր օր երկրին կտան մոտ 50 վագոն շաքարավազ։*

★ Այս տարվա 10 ամսում, անցյալ տարվա հա-
մապատասխան ժամանակամիջոցի համեմատու-
թյամբ, մեր երկրի արդյունաբերական արտադրանքի
արտադրությունն աճել է ավելի քան 12 տոկոսով։

★ Հինգերորդ հնգամյա պլանով նախատեսվում էր
արդյունաբերական արտադրանքն ավելացնել մոտա-
վորապես 70 տոկոսով։ Հնգամյա պլանի առաջա-
դրանքների կատարումը ցույց է տալիս, որ արդեն
չորս տարում (1951—1954 թ. թ.) արդյունաբերական
արտադրանքը 1950 թվականի համեմատությամբ կա-
վելանա 63 տոկոսով։ Դա նշանակում է, որ հնգամյա
պլանը արդյունաբերության գծով կկատարվի ժամ-
կետից շուտ։

★ 1954 թվականին կարտադրվեն ավելի քան 5,5
միլիարդ մետր բամբակե գործվածքներ. 242 միլիոն
մետր բրդե գործվածքներ, 520 միլիոն մետր մե-
տաքսե գործվածքներ։ Բամբակե գործվածքների ար-
տադրությունը 1950 թվականի համեմատությամբ ա-
վելացել է 43 տոկոսով, բրդե գործվածքներինը՝ 56
տոկոսով և մետաքսե գործվածքներինը՝ 4 անգամ։
Ընթացիկ տարում զգալիորեն կաճի ժողովրդական
սպառման նաև մյուս ապրանքների թողարկումը։

★ Հինգերորդ հնգամյակի չորս տարում բանվոր-
ների ու ծառայողների ռեալ աշխատավարձը, 1940
թվականի համեմատությամբ, կաճի մոտավորապես
74 տոկոսով, իսկ հաշվի առնելով բնակչության կուլ-
տուրական և սոցիալական-կենցաղային սպասարկման



համար պետական ծախսերի աճը, բանվորների ու
ծառայողների բոլոր եկամուտներն այդ ժամանակա-
միջոցում կավելանան գրեթե երկու անգամ։

★ Մեր երկրում ամեն տարի իջնում են մանրածախ
ապրանքների գները։ 1954 թվականին մանրածախ
ապրանքների գները 2,3 անգամ ավելի ցածր են 1947
թվականի գներից։ Այդ նույն ժամանակամիջոցում
կոլտնտեսային շուկայի գները իջել են գրեթե 4 ան-
գամ։ Դա առաջ է բերել բնակչության գնողունակու-
թյան զգալի աճ։

★ Բնակչության համար վաճառվող ապրանքների
շուկայական ֆոնդերը 1954 թվականին, 1950 թվակա-
նի համեմատությամբ, ավելացան հետևյալ չափերով՝
մսամթերքներ և շաքար՝ գրեթե 1,9 անգամ, ձկնա-
մթերքներ և կենդանական յուղ՝ գրեթե 1,6 անգամ,
բուսական յուղ՝ գրեթե 2 անգամ, բամբակե, բրդե,
վուշե և մետաքսե գործվածքներ՝ 66 տոկոսով, կա-
հույք՝ 2,9 անգամ։

★ Մեր երկրում տարեցտարի բարելավվում են աշ-
խատավորների բնակարանային պայմանները, որը
խոշոր նշանակություն ունի նրանց նյութական բա-
րեկեցության բարձրացման գործում։ Միայն հինգե-
րորդ հնգամյակի 4 տարում բնակարանային շինարա-
րությանը հատկացվող կապիտալ ներդրումները, ան-
ցած հնգամյակի համեմատությամբ, ավելացել են եր-
կու անգամ։

★ Մեր երկրի աշխատավորները լի ու լի ապա-

հովված են հացով և սննդի համար անհրաժեշտ կենսամթերքներով։ Դեռ նոյեմբերի 5-ին կոլտնտեսությունները և սովխոզները ժամկետից շուտ 100,1 տոկոսով կատարեցին հացահատիկի մթերումների ու գնումների պետական պլանը։ Պետությանը հանձնվել ու վաճառվել է 289 միլիոն փթով ավելի հացահատիկ, քան մինչև 1953 թվականի նույն օրը, ըստ որում, անցյալ տարվա համեմատությամբ ստացվել է ցորեն՝ 21 միլիոն փթով ավելի, հաճար՝ 65 միլիոն փթով, բանջարեղեն՝ 37 միլիոն փթով, ֆուրաժային կուլտուրաներ՝ 89 միլիոն փթով և եգիպտացորեն՝ 8 միլիոն փթով ավելի։

★ Այս տարի Սիբիրի շրջաններում հավաքվեց երկու անգամ ավելի հացահատիկ, քան անցյալ տարի։ Միայն Ալթայի երկրամասի կոլտնտեսությունները ու սովխոզները ընթացիկ տարում պետությանը հանձնեցին ու վաճառեցին 222 միլիոն փութ հացահատիկ, 195 միլիոն փթով ավելի, քան 1953 թվականին, իսկ Ղազախական ՍՍՌ-ի կոլտնտեսություններն ու սովխոզները՝ 232,1 միլիոն փութ հացահատիկ, 109 միլիոն փթով ավելի, քան անցյալ տարի։

★ Անասունների գլխաքանակի ու մթերատվության աճի շնորհիվ մինչև այս տարվա նոյեմբերի 1-ը մթերվել և գնվել է 233 հազար տոննայով ավելի միս և 669 հազար տոննայով ավելի կաթ, քան անցյալ տարի մինչև նույն օրը։

★ Աշխատավորների նյութական բարեկեցությունը



բարձրացնելու գործում վիթխարի հաջողությունների է հասել նաև մեր ռեսպուբլիկան։ Ռեսպուբլիկայում ստեղծվել է թեթև և սննդի բազմաճյուղ զարգացած արդյունաբերություն։

★ Ռեսպուբլիկայի թեթև արդյունաբերության ձեռնարկությունները 1940 թվականի համեմատությամբ, 1953 թվականին բամբակե գործվածքեղենի թողարկումն ավելացրել են 191,8 տոկոսով, մետաքսե գործվածքեղենը՝ 17 անգամ, փափուկ և կոշտ կաշվինը՝ 250—300 տոկոսով, կոշկեղենինը՝ 2,5 անգամ, տրիկոտաժինը՝ 4,3 անգամ, մահճակալներինը՝ 8,3 անգամ։

★ Ռեսպուբլիկայի սննդի արդյունաբերությունը այժմ թողարկում է 400 տեսակ արտադրանք։ Առաջիկայում սննդի ձեռնարկությունները կթողարկեն պարենային ապրանքների ևս 25 նոր տեսակ։ 1940 թվականի համեմատությամբ, անցյալ տարի պահածոների թողարկումն ավելացավ 2,5 անգամ, մսինը՝ 4,8 անգամ և այլն։

★ 1954 թվականին, 1953 թվականի համեմատությամբ, բրդե գործվածքների արտադրությունը ավելանալու է 139 տոկոսով, մետաքսե գործվածքներինը՝ 68 տոկոսով, կոշկեղենինը՝ 33 տոկոսով, ալյումինե ամանեղենինը՝ 5,2 անգամ, կահույքինը՝ 38 տոկոսով և այլն։

★ Լայն սպառման ապրանքների արտադրությունն ավելացնելու նպատակով առաջիկա երեք տարիների

ընթացքում ռեսպուբլիկայում կատարվելու է մեկ միլիարդ ռուբլու ներդրում։

★ 1954 և 1955 թվականներին ռեսպուբլիկայում կենցաղային սպասարկման ձեռնարկությունների թիվը կավելանա 2—3 անգամ։ Կառուցվելու են մահճակալի, մետաղյա ամանեղենի, երաժշտական գործիքների, կահույքի նոր գործարաններ ու ֆաբրիկաներ։

★ Աշխատավորների նյութական բարեկեցությունը բարձրացնելու գործում խոշոր նշանակություն ունի բնակարանային շինարարությունը։ 1950 թվականի 60 հազար քառակուսի մետրի փոխարեն այս տարի շահագործման կհանձնվի ավելի քան 102 հազար քառակուսի մետր տարածություն։

---

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

Հայպետհրատի հրատարակությամբ լույս են տեսել հետևյալ գրքերը.

Վ. Ի. ԼԵՆԻՆ — «Տնտեսական ռոմանտիզմի բնութագրության շուրջը»։ (Սիսմոնդին և մեր հայրենական սիսմոնդիստները)։ Գինը 1 ռ. 95 կ., 188 էջ, տիրաժ 7000։

Վ. ՆԻԿՈԼԱԵՎ — «ՍՄԿԿ քաղաքականությունը սովետական կարգի կենսական հիմքն է»։ Գինը 70 կ., 72 էջ, տիրաժ 5000։

Մ. ՆԱԼԲԱՆԴՅԱՆ — «Կրիտիկա «Սոս և Վարդիթեր»»։ Գինը 2 ռ. 85 կ., 172 էջ, տիրաժ 10000։

---

Պտ. խմբագրի՝ Վ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ

ընթացքում ռեսպուբլիկայում կատարվելու է մեկ միլիարդ ռուբլու ներդրում։

★ 1954 և 1955 թվականներին ռեսպուբլիկայում կենցաղային սպասարկման ձեռնարկությունների թիվը կավելանա 2—3 անգամ։ Կառուցվելու են մահճակալի, մետաղյա ամանեղենի, երաժշտական գործիքների, կահույքի նոր գործարաններ ու ֆաբրիկաներ։

★ Աշխատավորների նյութական բարեկեցությունը բարձրացնելու գործում խոշոր նշանակություն ունի բնակարանային շինարարությունը։ 1950 թվականի 60 հազար քառակուսի մետրի փոխարեն այս տարի շահագործման կհանձնվի ավելի քան 102 հազար քառակուսի մետր տարածություն։

---

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

Հայպետհրատի հրատարակությամբ լույս են տեսել հետևյալ գրքերը.

Վ. Ի. ԼԵՆԻՆ — «Տնտեսական ռոմանտիզմի բնութագրության շուրջը»։ (Սիսմոնդին և մեր հայրենական սիսմոնդիստները)։ Գինը 1 ռ. 95 կ., 188 էջ, տիրաժ 7000։

Վ. ՆԻԿՈԼԱԵՎ — «ՍՄԿԿ քաղաքականությունը սովետական կարգի կենսական հիմքն է»։ Գինը 70 կ., 72 էջ, տիրաժ 5000։

Մ. ՆԱԼԲԱՆԴՅԱՆ — «Կրիտիկա «Սոս և Վարդիթերի»»։ Գինը 2 ռ. 85 կ., 172 էջ, տիրաժ 10000։

---

Իտ. խմբագրի՝ Վ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ

ԲԱՑՎԱԾ Է
„ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ"-Ի
1955 թվականի
ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

*Բաժանորդագրությունն ընդունվում է կապի գրասենյակների և «Սոյուզպեչատ»-ի բոլոր բաժանմունքներում։*

*Լույս է տեսնում ամսական 2 անգամ։*

ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅԱՆ ՊԱՅՄԱՆՆԵՐԸ

12 ամիսը — 12 ռ.
6 ամիսը — 6 ռ.
Մեկ համարը — 50 կոպեկ
«ՍՈՅՈՒԶՊԵՉԱՏ»

Отдел Пропаганды и агитации
ЦК КП Армении
БЛОКНОТ АГИТАТОРА
№ 22 1954 г.

*ՎՖ 13970 Պատվեր 950 Տիրաժ 7900*

*Հայպոլիգրաֆհրատի № 2 տպարան, Երևան Կնունյանցի № 8, 1954 թ., գինը 50 կոպ.։*